Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 12 ՀՈՒՆԻՍ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՏՈՆԸ

*Հայկական արվեստի և գրականության տասնօրյակը, որն այնպես մեծ հաջողությամբ անցավ Մոսկվայում, հայ ժողովրդի բազմադարյան կուլտուրայի տոնն էր, կուլտուրա, որն իր աննախընթաց ծաղկումն ապրեց միայն Սովետական իշխանության տարիներին։ Քայքայված, անընդհատ կռիվներից և կյանքի ու մահու պայքարից բզկտված հայ ժողովուրդն իր սոցիալիստական զարգացումը ստացավ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ։ Հայ ժողովուրդը դարեր շարունակ սրբությամբ պահել ու փայփայել է իր կուլտուրան, լեզուն ու գրականությունը, գիրն ու երաժշտությունը, որոնք ժամանակի փորձության միջով անցնելով, որպես հղկված մարգարիտներ հասան մեզ, հիմք դրեցին ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական նոր կուլտուրային։ Այժմ մեր կատարողական կոլեկտիվները իրենց ծրագրերում կլասիկ ժա-*





ռանգության լավագույն նմուշների կողքին են դնում Սովետական Հայաստանի արվեստագետների բարձրարժեք գործերը, որոնք Միության ունկնդիրներին շատ բան են պատմում մեր ծաղկող արվեստի ու գրականության մասին։

Ամենից առաջ խոսենք օպերային ժանրի բնագավառում ձեռք բերած հաջողությունների մասին։

Մեր ունկնդիրները վաղուց սիրել, հարազատացել են Արմեն Տիգրանյանի «Անուշ» օպերային, որի անզուգական երաժշտությունը միշտ էլ գերում է լսողին, քանի անգամ էլ լսած լինես այն։ Բայց ահա մի քանի տարի առաջ, կյանքի գրեթե վերջին օրերին տաղանդավոր կոմպոզիտոր Արմեն Տիգրանյանն ավարտեց իր մյուս խոշոր գործը՝ «Դավիթ Բեկ» հայրենասիրական օպերան, որը մոնումենտալ մի աշխատանք է, նվիրված ժողովրդի հերոսական անցյալին։ Օպերան վերարտադրում է բոլորի կողմից սիրված զորավար Դավիթ Բեկի և նրա քաջարի զինվորների սխրագործությունները, որոնք 18-րդ դարի առաջին քառորդում համարձակ պայքարի էին ելել օտարերկրյա զավթիչների դեմ, և դաշնակցած ռուս ազգին, իրենց փրկությունն էին գտնում նրա հետ ունեցած



բարեկամության և ցույց տված օգնության մեջ։

Այս հիասքանչ օպերան բեմական իր բարձրորակ մարմնավորումն է գտել Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնի կոլեկտիվի կողմից և պատահական չէ այն հաջողությունը, որ նա ունեցավ Մոսկվայում, Մեծ թատրոնում։ Ինչպես «Պրավդա»-յում հունիսի 5-ին լույս տեսած «Դավիթ Բեկ» հոդվածում, այնպես էլ առանձին կարծիքներում և խոսակցություններում Միության արվեստագետները բարձր գնահատական տվեցին այս նոր ստեղծագործության թե երաժշտությանը, թե դերակատարումներին և թե մանավանդ նվագախմբին, որի դիրիժյոր, ժողովրդական արտիստ Մ. Թավրիզյանը ջանք չէր խնայել օպերան ավելի հնչեղ և նպատակասլաց դարձնելու համար։

Հայկական արվեստի և գրականության տասնօրյակի բացման օրը, հունիսի 1-ին Մեծ թատրոնում ներկայացվեց «Դավիթ Բեկ»-ը, որի դիտմանը ներկա էին ընկերներ Ն. Ա. Բուլգանինը, Ն. Ս. Խրուշչևը, Լ. Մ. Կագանովիչը, Ա. Ի. Միկոյանը, Վ. Մ. Մոլոտովը, Մ. Գ. Պերվուխինը, Մ. Ա. Սուսլովը, Կ. Ե. Վորոշիլովը, ՍՍՌՄ Կուլտուրայի մի-

*նիստր Ն. Ա. Միխայլովը։ Ներկայացմանը ներկա էին նաև ՀԿՊ Կենտկոմի քարտուղարներ Ս. Հ. Թովմասյանը, Հ. Խ. Մարգարյանը, Բ. Ե. Սարկիսովը, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության նախագահ Շ. Մ. Առուշանյանը, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի նախագահ Ա. Ե. Քոչինյանը, Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստր Ա. Խ. Շահինյանը։*

*Մեր արվեստի համար զգալի նվաճում է «Սևան» բալետը, որի երաժշտությունը գրել է կոմպոզիտոր Գրիգոր Եղիազարյանը։ Ստեղծագործորեն մոտենալով հայկական ժողովրդական երգերին, կոմպոզիտորը կերտել է լիրիկականությամբ, հույզով հագեցված մի գործ, որը պատմում է մեր երիտասարդության բազմաբեղուն աշխատանքային առօրյայի, նրա ապրումների և մտորումների մասին։ Բալետը հետաքրքիր է նաև նրանով, որ այնտեղ գլխավոր դերերում հանդես են գալիս Երևանի Խորեոգրաֆիկ ուսումնարանն ավարտած և սովետական բալետային դպրոցն անցած երիտասարդ ուժեր։*

*Այս նոր ստեղծագործությունների հետ միասին Երևանի Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնի կոլեկտիվը Մոսկվայում կայացած Հայկական արվեստի*



*և գրականության տասնօրյակին ներկայացրեց Տիգրան Չուխաջյանի «Արշակ Երկրորդ» օպերան, որի երաժշտությունը խորապես ազգային լինելով, միաժամանակ խիստ մատչելի է Միության ունկնդրին, գրված է բարձր կուլտուրայով։ Ոկալ հնչեղությամբ և մեղեդիականությամբ են աչքի ընկնում «Արշակ Երկրորդ» օպերայի մեներգերը, բազմաթիվ խմբերգերը։*

*«Արշակ Երկրորդ»-ի Մոսկվայում տրված երկրորդ ներկայացումը դիտեցին պարտիայի և կառավարության ղեկավարները, ինչպես նաև պաշտոնական այցով Սովետական Միություն հյուր եկած Հարավսլավիայի ֆեդերատիվ ռեսպուբլիկայի պրեզիդենտ Իոսիպ Բրոզ Տիտոն և նրան ուղեկցող անձինք։*

*Օպերայի և բալետի թատրոնի ստեղծագործական կոլեկտիվը հաջողությամբ և հարազատորեն է վերարտադրում ռուս և արևմտաեվրոպական կլասիկների գործերը։ Տասնօրյակի ներկայացումների մեջ իր պատվավոր տեղն է գրավում ռուս հանճարեղ կոմպոզիտոր Պ. Ի. Չայկովսկու «Պիկովայա դամա» հռչակավոր օպերան, որը մեր թատրոնում բեմադրել է ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Ռուբեն Սիմոնովը։ Այդ բեմադրությունը իր մեկնաբանմամբ նորություն էր*

մայրաքաղաքի հասարակության համար և գրավեց երաժշտագետների ուշադրությունը: «Պրավդա»-յում լույս տեսած ընդարձակ ռեցենզիայում նշվում է բեմադրության առավելությունները:

Մոսկվայում իր վարպետությունը դրսևորեց Հայֆիլհարմոնիայի սիմֆոնիկ նվագախումբը, որը կատարեց Արամ Խաչատրյանի երկրորդ սիմֆոնիան, երիտասարդ կոմպոզիտորներ Ալ. Հարությունյանի, Ա. Բաբաջանյանի, Էդ. Հովհաննիսյանի, Ղ. Սարյանի, Էդ. Միրզոյանի, Ս. Ջրբաշյանի նոր, արժեքավոր ստեղծագործությունները:

Հայկական արվեստի և գրականության համար պատմական նշանակություն ունեցող այս երկրորդ տասնօրյակում իրենց ամենալավ կողմերից դրսևորեցին նաև ռեսպուբլիկայի թատերական կոլեկտիվները: Հայ ժողովուրդը միշտ էլ հետաքրքրվել է թատերական արվեստով և սիրել է այն: Հայտնի են համաշխարհային փառքի հասած բազմաթիվ հայ արտիստների անունները, որոնք հանդիսանում են մեր ժողովրդի պարծանքը: Այս տասնօրյակին էլ, չնայած իրենց արդեն պատկառելի հասակին, ականավոր վարպետները մեծ ոգևորությամբ և եռանդով կատարեցին իրենց դերերը, գեղարվեստական հաճույք պատճառելով Մոսկվայի հանդիսատեսներին:



Ժողովրդական արտիստներ Վահրամ Փափազյանը, Վաղարշ Վաղարշյանը, Հրաչյա Ներսիսյանը, Ավետ Ավետիսյանը, Գուրգեն Ջանիբեկյանը, Օլգա Գուլազյանը հանդես եկան Գ. Սունդուկյանի անվան դրամատիկ թատրոնի Մոսկվա տարած ներկայացումների գլխավոր դերերում:

Հայ թատերական արվեստի հիմնական օջախն է Գ. Սունդուկյանի անվան թատրոնը, որտեղ կենտրոնացված են ռեսպուբլիկայի արտիստական լավագույն ուժերը: Թատրոնը Մոսկվա էր տարել իր ռեպերտուարի ծաղիկը կազմող լավագույն ներկայացումները՝ Գ. Սունդուկյանի «Էլի մեկ զոհ», Վ. Փափազյանի «Ժայռը», Շիրվանզադեի «Նամուսը», Վ. Շեքսպիրի «Օթելլոն», Մ. Գորկու «Եգոր Բուլըչևը և ուրիշները»: Բոլոր ներկայացումներն էլ Մոսկվայում անցան մեծ հաջողությամբ:

Կենտրոնական մամուլը առանձին ուշադրությամբ նշեց Լենինականի դրամատիկ թատրոնի նվաճումները: Հատկապես Ն. Զարյանի «Փորձադաշտ» պիեսի բեմադրությունն արժանացավ Միության հանդիսատեսների ուշադրությանը:

Մոսկվայում լավ ընդունելություն գտան նաև Երևանի Կ. Ստանիսլավսկու անվան ռուսական դրամատիկ թատրոնի արտիստները։ Վերջին մի քանի տարիների ընթացքում զգալի բեկում է նկատվում ստեղծագործական այդ կոլեկտիվի աշխատանքում։ Հաղթահարելով լուրջ դժվարություններ, նա իր խաղացանկը հարստացրեց այնպիսի ներկայացումներով, ինչպես Ն. Պոգոդինի «Կրեմլյան կուրանտները», Մ. Գորկու «Քաղքենիները», Ալ. Շիրվանզադեի «Պատվի համար»-ը։ Որքան էլ ռուս արտիստների համար դժվար է խաղալ հայ ազգային կլասիկ դրամատուրգիայի մի այնպիսի դժվարին պիես, ինչպիսին «Պատվի համար»-ն է, այնուհանդերձ հպարտությամբ պետք է ասել, որ թատրոնի կոլեկտիվը այդ պիեսի ներկայացման մեջ հանդես բերեց նուրբ ըմբռնողություն և կարողացավ հարազատորեն բեմականացնել այն։

Նշանակալից են այն նվաճումները, որ վերջին տարիներին ձեռք են բերել մեր գրողները՝ արձակագիրները, բանաստեղծները և դրամատուրգները։ Ուղեցույց ունենալով իդեոլոգիայի հարցերի վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները, նրանք հիմնովին վերակառուցեցին ի-



րենց աշխատանքները և ստեղծեցին մեր օրերի հերոիկան պատկերող, անցյալի իրականության խոցերը վեր հանող, հայ ժողովրդի պատմությանը նվիրված մի շարք արժեքավոր երկեր։ Ազատվելով անկոնֆլիկտայնության վնասակար թեորիայից, մեր արձակագիրներն ու բանաստեղծները ընդհուպ մոտեցան կյանքին, իրենց ստեղծագործությունների նյութ դարձնելով մարդուն, նրան հետաքրքրող խնդիրները, նրա հոգեբանությունը։

Թվարկել բոլոր այն գործերը, որոնք լույս են տեսել վերջին մոտ մեկ ու կես տասնամյակում հնարավոր չէ, որովհետև դրանք շատ են, բայց նրանցից մի քանիսը ամուր կերպով գրավել են մեր ընթերցողների համակրանքը և դարձել են նրանց սիրելի գրքերը։ Դրանցից է հայ նշանավոր արձակագիր Դերենիկ Դեմիրճյանի «Վարդանանք»-ը, որը մեծակտավ, հայրենասիրական բուռն շնչով գրված մոնումենտալ աշխատություն է, նվիրված հայ անվանի զորավար Վարդան Մամիկոնյանի հայրենանվեր գործունեությանը։ Գրքի ռուսերեն թարգմանությունը արժանի հաջողություն գտավ Միության ընթերցողների մոտ։

Սովետահայ գրականության համար նշանակալից երևույթ էին նաև Աղավնու «Շիրակ», Ա. Սահինյանի «Մարալ», Ս. Խանզադյանի «Հողը», Հր. Քոչարի «Մեծ տան զավակները» վեպերը, որոնք վկայում են մեր գրականության առաջընթացը։

Զգալի նվաճումներով տասնօրյակ գնացին մեր բանաստեղծները, որոնցից Հ. Շիրազի, Ս. Տարոնցու; Ս. Կապուտիկյանի, Հր. Հովհաննիսյանի, Վ. Դավթյանի, Սարմենի, Գ. Էմինի, Պ. Սևակի և ուրիշների գործերը քննարկվեցին Մոսկվայի Գրողների Միության կազմակերպած գրական երեկոներում, ռուս գրողների և թարգմանիչների ակտիվ մասնակցությամբ։ Այդ երեկոներում ռուս գրողները նշեցին սովետահայ գրականության նվաճումները, միաժամանակ վեր հանեցին այնտեղ տեղ գտած թերությունները—թեմատիկայի որոշ սահմանափակությունը, մոտիվների և տրամադրությունների կրկնությունը։ Սովետահայ գրողների համար ստեղծագործական այդ քննարկումները մեծ նշանակություն կունենան հետագա աշխատանքներում։

Տասնօրյակ էին տարվել նաև հայ կլասիկ գրականության լավագույն նմուշները՝ Հովհ. Թումանյանի, Մուրացանի, Նար-Դոսի, մեր



պոեզիայի վարպետ Ավ. Իսահակյանի, պրոլետարական գրող Հակոբ Հակոբյանի, Եղիշե Չարենցի, Ակսել Բակունցի երկերը։

Հայ գեղանկարչության հռչակավոր վարպետ Մարտիրոս Սարյանի ընդարձակ ցուցահանդեսի հետ միասին Մոսկվայում բացվեց հայ կերպարվեստի ցուցահանդես, որտեղ ներկայացված են նկարչության և քանդակագործության ասպարեզում մեր կերպարվեստագետների ձեռք բերած լուրջ նվաճումները։

Ստեղծագործական կատարյալ հաղթանակ էին հայկական ժողովրդական երգի և պարի պետական վաստակավոր անսամբլի և պետական երգեցիկ խմբի՝ Մոսկվայում ունեցած ելույթները, որոնց կատարողական արվեստին կենտրոնական մամուլը տվեց խիստ բարձր գնահատական։

«Սովետսկայա կուլտուրա» թերթը հունիսի 5-ին մի ամբողջ էջ էր նվիրել հայկական արվեստի և գրականության տասնօրյակին։ Էջում զետեղված հոդվածներից մեկը նվիրված է Հայկական պետական երգչախմբին։ «Երգչախմբի կատարումն աչքի է ընկնում անկեղծությամբ, կրակոտությամբ, գեղարվեստական խիստ արտահայտչականու-

թյամբ և լայն արձագանք է գտնում ունկընդիրների մեջ», գրված է հոդվածում։

Իրենց արվեստը ցուցադրելու համար Մոսկվա էին մեկնել նաև Հայֆիլհարմոնիայի մյուս կոլեկտիվները՝ Պետական էստրադային նվագախումբը, Սայաթ-Նովայի անվան գուսանական երգի վաստակավոր անսամբլը, Ռադիոյի ժողովրդական գործիքների անսամբլը, բազմաթիվ մենակատարներ։

Նրանք բոլորն էլ Մոսկվայից վերադարձան ստեղծագործական նոր լիցք առած, ոգևորված ու երջանիկ այն մեծ ուշադրության համար, որ Մոսկվայում Հայկական արվեստի և գրականության տասնօրյակի ժամանակ նրանց ցույց տվեցին մեր պարտիայի և կառավարության ղեկավարները, Մոսկվայի ուշադիր և զգայուն հանդիսատեսները, մեր երկրի բոլոր ժողովուրդները։

---

## ՍՍՌՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՍՊԱՐՏԱԿԻԱԴԱՆ

*ԱՐՏ. ԽԱՉԻԿՅԱՆ*

**Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից ֆիզկուլտուրայի և սպորտի գործերի կոմիտեի նախագահ**

Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում մեր երկրում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման գործին։ Ֆիզիկական կուլտուրան և սպորտը հաստատուն կերպով մտել է սովետական ժողովրդի կենցաղի մեջ։ Քաղաքի և գյուղի միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ սիստեմատիկաբար զբաղվում են ֆիզիկական կուլտուրայով և սպորտի տարբեր ձևերով։

Մեր երկրում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման նկատմամբ պարտիայի ու կառավարության հոգատարության նոր վառ արտահայտությունը հանդիսացավ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը 1956 թվականի օգոստոսին Մոսկվայում ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադա անցկացնելու մասին։

ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադան մեծագույն իրադարձություն է սովետական սպորտի պատմության մեջ։ Այդ օրերին մեր ֆիզկուլտուրնիկների մեծ բանակը հաշվետվություն կտա ժողովրդին, պարտիային և կառավարությանը՝ իր նվաճումների մասին։

Սպարտակիադայի ծրագրի մեջ մտնում են սպորտի 21 ձև, այդ թվում՝ բասկետբոլ, բռնցքամարտություն, ազատ և կլասիկ ըմբշամարտություն, հեծանիվային սպորտ, ջրային պոլո, վոլեյբոլ, սպորտային մարմնամարզություն, թիավարություն, հեծյալ սպորտ, թեթև ատլետիկա, լող, ցատկում ջրի մեջ, գնդակային և ատենդային հրաձգություն, ժամանակակից հնգամրցում, թեննիս, ծանր ատլետիկա, սուսերամարտություն, ֆուտբոլ։

Հայկական ՍՍՌ ռեսպուբլիկայի սպորտային կազմակերպությունները զգալի հաջողություններ են ձեռք բերել ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման բնագավառում։ Սպարտակիադայի նախապատրաստությունը ամենուրեք աշխուժացրել է ֆիզկուլտուրային շարժումը, նրանում ընդ-



գրկելով ավելի շատ գործարանային, գյուղական և սովորող երիտասարդներ։

Ֆիզկուլտուրային շարժման բոլոր օղակները, սկսած ստորին սպորտային կոլեկտիվներից մինչև քաղաքների և ռեսպուբլիկայի հավաքական թիմերը այժմ գործարար պատրաստություն են տեսնում ռեսպուբլիկական սպարտակիադային, որը անց է կացվելու Երևանում 1956 թվականի հունիսի 24-ից մինչև 28-ը։ Սպորտային այդ մեծ մրցությանը մասնակցելու են 2.100 սպորտսմեններ և ֆիզկուլտուրնիկներ։ Ռեսպուբլիկայի շրջաններում, Երևանում և Կիրովականում արդեն ավարտվել են շրջանային և քաղաքային սպարտակիադաները։ Գյուղական շրջաններում սպարտակիադաներին մասնակցեց ավելի քան 12 հազար մարդ։ Կիրովական քաղաքի սպորտսմենները և ֆիզկուլտուրնիկները իրենց առաջին սպարտակիադան անցկացրեցին կոմերիտականների և երիտասարդության ուժերով կառուցված գեղեցիկ ու բարեկարգ նոր ստադիոնում։ Սպարտակիադան Կիրովականում վերածվեց սպորտային մեծ տոնի, որին մասնակցեց քաղաքի աշխատավորության զգալի մասը։

Շրջանային և քաղաքային սպարտակիա-
դաներում, ինչպես նաև փնջային մրցու-
թյուններում հաղթողները, իրավունք են
նվաճել ռեսպուբլիկական սպարտակիադա-
յին մասնակցելու համար։ Այդ իրավունքը
հեշտությամբ չի տրվում։ Ռեսպուբլիկական
սպարտակիադայի առաջին խմբով կարող են
մասնակցել միայն այն սպորտսմենները,
որոնք լրացրել են 2-րդ կարգային նորմա-
ները, երկրորդ խմբով՝ 3-րդ կարգային նոր-
մաները։

Սպորտային մրցումները կոլեկտիվ-
ներում, քաղաքային և շրջանային սպար-
տակիադաները ոչ միայն հրապարակ հանե-
ցին սպորտի այս կամ այն ձևից հաղթողնե-
րին, այլև հնարավորություն տվեցին հազա-
րավոր պատանիների ու աղջիկների հանձ-
նել ՊԱՊ-ի կոմպլեքսի նորմաները, իրենց
արդյունքները մոտեցնել կարգային նորմա-
ներին։

Մրցումների զգալի աճը անհրաժեշ-
տություն առաջ բերեց ստեղծել սպորտային
նոր բազաներ, կարգի բերել, վերանորոգել,
կահավորել եղած բազաները, ձեռք բերել
մեծ քանակությամբ սպորտային գույք։

Հայկական ՍՍՌ Սպարտակիադան լավ
նախապատրաստելու և ՍՍՌՄ ժողովուրդ-



ների սպարտակիադան արժանավայել կեր-
պով դիմավորելու համար Հայաստանի ԿՊ
Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների
Սովետը նշել են մի շարք միջոցառումներ։
Նրանք պարտավորեցրել են մինիստրու-
թյունների, գերատեսչությունների ղեկավար-
ներին, գործարանների, ֆաբրիկաների,
բուհերի, տեխնիկումների դիրեկտորնե-
րին ամեն կերպ օգնել սպարտակիադայի
մասնակիցներին, նրանց համար ստեղծել
բոլոր հնարավորությունները առաջիկա
սպորտային մրցումներին լավ նախա-
պատրաստվելու համար։

Ինչպես հայտնի է, ՍՍՌՄ ժողովուրդների
սպարտակիադային մասնակցելու պատվա-
վոր իրավունքը կարող են նվաճել այն
սպորտսմենները, որոնք 1955—1956 թվա-
կանների ընթացքում ցույց կտան առաջին
կարգայինի արդյունքներ։ Երբ մենք սկսե-
ցինք մոտավորապես կազմել մեր հավաքա-
կան թիմերը սպորտի 20 ձևերի գծով,
պարզվեց, որ անհրաժեշտ 376 առաջին
կարգայինների փոխարեն ունենք ընդամենը
256 առաջին կարգայիններ, այլ կերպ ա-
սած, սպորտի մի շարք ձևերից (թեթև-ատ-
լետիկա, լող, ստենդային հրաձգություն,
ցատկում ջրի մեջ) հավաքական թիմերը

ամբողջությամբ առաջին կարգայիններով դեռ չեն կոմպլեկտավորված: Այդ հանգամանքը պահանջեց արմատապես բարելավել ուսումնա-մարզչական աշխատանքի որակը: Անհրաժեշտ եղավ մեծ ուշադրություն նվիրել երկրորդ կարգայիններին: Երիտասարդության միջից հանդես եկան բազմաթիվ ընդունակ սպորտսմեններ:

Անցած մեկ տարվա ընթացքում սպորտային վարպետության բարձրացման ուղղությամբ կատարված աշխատանքը ստուգելու համար Ֆիզկուլտուրայի և սպորտի ռեսպուբլիկական կոմիտեն որոշեց հանդիպումներ կազմակերպել եղբայրական ռեսպուբլիկաների հավաքական թիմերի հետ: Վերջին երկու ամսվա ընթացքում Երևանում հանդիպումներ ունեցան Լատվիայի, Հյուսիսային Օսեթիայի, Դաղստանի և Հայաստանի սուսերամարտիկները: Բռնցքամարտի մեր հավաքական թիմը Երևանում հանդիպում ունեցավ Ղազախստանի հավաքական թիմի հետ, մեր թեթև ատլետները Թբիլիսիում մասնակցեցին թեթև ատլետիկայի անդրկովկասյան մրցություններին, թիավարողները իրենց ուժերը չափեցին Վրաստանի, Ադրբեջանի թիավարողների հետ, լողորդները մասնակցեցին լողի անդրկովկաս-



յան մրցություններին, որը տեղի ունեցավ Բաքու քաղաքում:

Եղբայրական ռեսպուբլիկաների սպորտսմենների հետ ունեցած այդ հանդիպումները ոչ միայն նպաստեցին մեր հավաքական թիմերի սպորտային վարպետության բարձրացմանը, այլև ամրապնդեցին սպորտային կապերը այդ ռեսպուբլիկաների սպորտսմենների հետ:

Իրենց սպորտային արդյունքները զգալիորեն բարելավել և այժմ ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադային լավ են նախապատրաստվում մեր հեծանվորդները և հեծյալները: Վերջերս անցկացվեց բազմօրյա հեծանվային վազք, որին մասնակցեցին «Սպարտակ», «Դինամո», «Բուրևեստնիկ», «Կոլտնտեսական», «Պիշչևիկ», «Կարմիր դրոշ» սպորտային ընկերությունների, Լենինականի ու Կիրովականի մոտ 40 հեծանվորդներ: Ութ էտապի բաժանված բազմօրյա վազքում, որի ընդհանուր տարածությունն էր 1.092 կիլոմետր, ընդհանուր խմբային առաջնությունը նվաճեցին «Սպարտակ» ընկերության հեծանվորդները: Բոլոր էտապների ընդհանուր գումարով առաջին տեղը նվաճեց երիտասարդ սպորտսմեն Տ.

Ավագյանը, երկրորդ տեղը՝ Ս. Հովհաննիսյանը։
Այժմ հեծանվորդների հավաքական թիմը
իր մարզումները անցկացնելու և սպարտա-
կիադային ավելի լավ նախապատրաստվելու
համար մեկնել է Պոլտավա, ուր անցկաց-
վելու է ՍՍՌՄ ժողովուրդների սպարտա-
կիադայի հեծանվային մրցումները։ Մոսկ-
վայում է գտնվում հեծյալների թիմը. նրանք
այնտեղ մինչև ժողովուրդների սպարտա-
կիադան սկսվելը կանցկացնեն իրենց ու-
սումնա-մարզական պարապմունքները և
ընկերական հանդիպումներ կունենան
ՌՍՖՍՌ-ի ու Մոսկվայի հեծյալների հավա-
քական թիմերի հետ։ Մի քանի օրից Մոսկ-
վայում, Խիմկիի ջրային կայանում մարզվելու
կմեկնեն մեր թիավարողները։ Բուհերում
քննությունների ավարտվելուց հետո, ռես-
պուբլիկայի թեթև, ատլետիկայի, բռնցքա-
մարտության, ազատ և կլասիկ ըմբշամար-
տության հավաքական թիմերը կմեկնեն Լե-
նինական և Կիրովական, որտեղ նրանց ու-
սումնա-մարզական պարապմունքների հա-
մար կստեղծվեն անհրաժեշտ պայմաններ։
ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադայի
նախապատրաստության կապակցությամբ
զգալի աշխատանք է կատարվում սպորտի



պրոպագանդայի ուղղությամբ։ «Կոլտնտե-
սական» կամավոր սպորտ ընկերության ռես-
պուբլիկական խորհուրդը հրատարակել է
սպարտակիադային նվիրված գեղեցիկ պլա-
կատներ, մեթոդական ու հրահանգչական
բրոշյուրներ, ֆիզկուլտուրայի և սպորտի
ռեսպուբլիկական կոմիտեն պատրաստել և
տպագրության է հանձնել «Սպորտային Հա-
յաստան» անունը կրող պատկերազարդ ժո-
ղովածուն, որը լույս կտեսնի հայերեն և
ռուսերեն լեզուներով, հուլիս ամսին։
Ռեսպուբլիկական սպարտակիադայի օրը
Հայաստանի ֆիզկուլտուրնիկները պարտիա-
յից և կառավարությունից կստանան հրաշա-
լի նվեր՝ կսկսվի վերահրատարակվել «Հա-
յաստանի ֆիզկուլտուրնիկ» թերթը։
Հայաստանի ֆիզկուլտուրնիկները և
սպորտսմենները պարտիայի և կառավարու-
թյան հոգատարությանը կպատասխանեն
սպորտում ու աշխատանքում ձեռք բերված
նորանոր նվաճումներով, իրենց բոլոր ու-
ժերը կգործադրեն, որպեսզի ՍՍՌՄ ժողո-
վուրդների սպարտակիադան նշանավորեն
նոր ռեկորդներով։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ՀԵՏ

*Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

*Ախտայի շրջանի Ջրառատ գյուղի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի անասնապահները գովեստով են խոսում իրենց ագիտատոր Ս. Զաքարյանի մասին։ Ագիտատորը նրանց համար սիստեմատիկաբար հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ է կազմակերպում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի որոշումների կենսագործման, պարտիայի ու կառավարության ներքին և արտաքին քաղաքականության, ինչպես նաև կոլտնտեսության ու ֆերմայի առջև դրված կոնկրետ խնդիրների մասին։ Անասնապահները սիրով են լսում ագիտատորին և նրա օգնությամբ պարզաբանում իրենց հուզող հարցերը։ Օրերս նա անասնապահների հետ զրույց անցկացրեց կերի կայուն բազա ստեղծելու և անասունների խնամքը բարելավելու մասին։*

*Զրույցի սկզբում ընկ. Զաքարյանը համառոտ կերպով կանգ առավ այն միջոցառում-*



*ների վրա, որ մշակել են պարտիան ու կառավարությունը անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։*

*Այդ կարևոր խնդրի իրականացման գլխավոր նախապայմանը,— ասաց նա,— կե-*
*րի կայուն բազայի ստեղծումն է հացահատի-*
*կային տնտեսության հետագա զարգացման*
*միջոցով, որովհետև առանց լավ զարգացած*
*հացահատիկային տնտեսության չի կարելի*
*բարձրացնել անասնաբուծությունը։*

*Բազմակողմանի ուսումնասիրությունների*
*ու հաշվումների միջոցով, շարունակում է ա-*
*գիտատորը, պարզվել է, որ մեր երկրի անաս*
*նապահության կարիքների համար տարեկան*
*պահանջվում է առնվազն 4 միլիարդ փութ*
*ֆուրաժային հատիկ։ Այդ է պատճառը, որ*
*պարտիայի 20-րդ համագումարը խնդիր դրեց*
*1960 թվականին հացահատիկի արտադրու-*
*թյունը մեր երկրում հասցնել 11 միլիարդ*
*փթի։*

*Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին*
*կոնկրետ օրինակներով ցույց է տալիս այն*
*հաջողությունները, որ արդեն ձեռք է բերվել*
*հացահատիկի արտադրությունն ավելացնե-*
*լու բնագավառում՝ խամ և խոպան հողերի*
*յուրացման, ինչպես նաև եգիպտացորենի*
*ցանքսերի ավելացման միջոցով։*

Անասնակերի կայուն բազայի ստեղծման գործում առանձնապես մեծ դեր խաղաց եգիպտացորենի ցանքսերի ընդարձակումը։ Այդ հիանալի կուլտուրայի արժեքավորությունն այն է, որ նրա միջոցով լուծվում է թե հացահատիկի արտադրության ավելացման և թե նրա կանաչ ցողուններից բարձրորակ սիլոսի պատրաստման հարցը։

Եգիպտացորենի արժեքավորությունը պարզաբանելուց հետո ագիտատորը կոնկրետ փաստերով ու թվերով ցույց է տալիս, թե իրենց կոլտնտեսությունը ինչ է արել և ինչ է մտադիր անելու եգիպտացորենի մշակությունը բարելավելու և բերքատվությունը բարձրացնելու համար։

Անցյալ տարի մեր կոլտնտեսությունը,— ասում է նա,— առաջին անգամ ցանեց 35 հեկտար եգիպտացորեն, որը հիանալի արդյունք տվեց, յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 35, իսկ առանձին հեկտարներից՝ 45 ցենտներ կողր։ Եգիպտացորենի կանաչ մասսայից կուտակվեց 250 տոննա բարձրորակ սիլոս, իսկ կողրերից՝ 200 տոննա խտացրած կեր։ Կերի պաշարը ավելացնելու գործում մեծ նշանակություն ունեցավ նաև ճակընդեղի ցանքը, որի յուրաքանչյուր հեկտա-



րից ստացվեց 480 ցենտներ բերք։ Զգալի չափով ավելացվեց նաև խոտի և կոշտ կերի կուտակումը։

Ունենալով կերի անհրաժեշտ պաշար,— շարունակում է նա,— հնարավոր դարձավ զգալի չափով ավելացնել կովերի կաթնատվությունը։ Օրինակ, մսուրային շրջանում յուրաքանչյուր ֆուրաժային կովի օրական միջին կաթնատվությունը հասավ 14—15 լիտրի։ Եթե անցյալ տարի մսուրային շրջանում ամեն մի կովի միջին կաթնատվությունը կազմում էր 560 լիտր, ապա այս տնտեսական տարվա նույն ժամանակամիջոցում այն հասցվել է 886 լիտրի, այսինքն՝ մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունն ավելացել է 326 լիտրով։

Կոլտնտեսության վարչությունը որոշել է այս տարի եգիպտացորենի ցանքատարածությունը 35 հեկտարից հասցնել 65 հեկտարի։ Սա հնարավորություն կտա եկող տնտեսական տարում յուրաքանչյուր ֆուրաժային կովի կերի միավորը ավելացնել առնվազն 1,5 անգամ։

Ագիտատորը իր զրույցում հատուկ տեղ հատկացրեց առանձին կթվորուհիների աշխատանքի դրական փորձին, ցույց տալով, թե նրանցից յուրաքանչյուրը ինչպես է պայ-

քարում սոցիալիստական մրցությամբ ընդունած պարտավորությունները կատարելու համար։ Այս տնտեսական տարում մենք պետք է յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանանք 1350 լիտր կաթ,— նշում է ագիտատորը։— Փաստերը ցույց են տալիս, որ մենք բոլոր հնարավորությունները ունենք ոչ միայն կատարելու, այլև զգալիորեն գերակատարելու կովերի կաթնատվությունը բարձրացնելու առաջադրանքը։ Դեռ ավելին, մեր ֆերմայի առանձին կթվորուհիներ իրենց քրտնաջան աշխատանքի շնորհիվ արդեն կատարել ու գերակատարել են կաթնատվության տարեկան պլանը։ Օրինակ, կթվորուհի Ն. Ավդալյանը (ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ) մայիսի 10-ի տվյալներով, իրեն ամրացված յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 1218 լիտր կաթ։ Անցյալ տարի նա յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 1670 լիտր կաթ, պլանով նախատեսված 1250 լիտրի փոխարեն, առանձին կովերից ստացել է 1900 լիտր, իսկ «Ղազալ» կովից՝ 2200 լիտր կաթ։ Լ. Կարապետյանը նույն ժամանակամիջոցում յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 1217 լիտր կաթ, Ա. Մանուկյանը, չնայած դեռ առաջին տարին է, որ աշխատում է որպես կթվորուհի,



կարողացել է հասնել զգալի հաջողությունների և մայիսի 10-ի տվյալներով, յուրաքանչյուր ֆուրաժային կովից արդեն ստացել է 1012 լիտր կաթ։ Առաջավորների օրինակը ցույց է տալիս, որ կովերի կաթնատվությունը ավելացնելու համար, առատ կեր ունենալուց բացի, անհրաժեշտ է նաև լուրջ ուշադրություն դարձնել նրանց խնամքի վրա։

Կովերի խնամքը բարելավելու գործում մեծ նշանակություն ունի աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Կոլտնտեսության վարչությունը որոշել է այս տարի մեքենայացնել անասնակերի մատակարարումը և ջրումը։

Զրույցի վերջում ագիտատորը մանրակրկիտ պատասխան տվեց լրացուցիչ վարձատրության մասին ունկնդիրների հարցերին, հիշեցնելով նրանց, թե ինչպես ամեն տարի մի շարք կոլտնտեսականներ կաթնատվության պլանը գերակատարելու համար լրացուցիչ վարձատրություն են ստանում։

---

# ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅԻ ՎԵՑ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԸ

Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկան իր տերիտորիայով և բնակչությամբ Բալկանյան թերակղզու ամենախոշոր երկիրն է։ Նրա տարածությունը հավասար է 256 հազար քառակուսի կիլոմետրի, բնակչությունը՝ ավելի քան 17,5 միլիոն։ Բնակչության մեծամասնությունը հարավսլավոնական ժողովուրդներն են՝ սերբեր, խորվաթներ, սլովեններ, մակեդոնացիներ, չերնոգորցիներ։

Իսկ ինչ են ներկայացնում այն վեց ռեսպուբլիկաները, որոնցից կազմված է Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկան։

## ՍԵՐԲԻԱ

Դա Հարավսլավական ֆեդերացիայի ամենամեծ ռեսպուբլիկան է։ Նրա տերիտորիան 88,4 հազար քառակուսի կիլոմետր է, բնակչությունը՝ 7,2 միլիոն մարդ։ Սերբիայի կազմի մեջ մտնում են Վոյեվոդինա ավտո-



նոմ երկրամասը և Կոսովո-Մետոխիա ավտոնոմ մարզը։

Բնակչության մեծ մասը կազմում են սերբերը։ Վոյեվոդինայում ապրում են նաև հունգարներ, իսկ Կոսովոյում և Մետոխիայում՝ ալբանացիներ։ Նրանք բոլորն էլ վայելում են լիակատար իրավահավասարություն։

Սերբիան ընկած է Հարավսլավիայի հյուսիս-արևելյան և արևելյան մասում։ Նրա բնական պայմանները բազմազան են։ Հյուսիսում, Դանուբի և Տիսսայի երկարությամբ, ձգվում է մի արգավանդ հարթավայր, որը հարավային մասում փոխվում է խիստ կտրատված լեռնոտ տեղանքի։ Երկրի ընդերքում թաքնված են ոչ քիչ հարստություններ, որոնցից առանձնապես աչքի են ընկնում պղնձի, արճճի և ցինկի հանքերը։

Չնայած այն բանին, որ Սերբիան ուներ բնական մեծ հարստություններ, նրա էկոնոմիկան անցյալում խիստ ետ էր մնում ոչ միայն արևմտաեվրոպական պետություններից, այլև հարևան Խորվաթիայից և Սլովենիայից։

Ժողովրդական իշխանությունը գլխավոր ուշադրությունը նվիրեց ինդուստրիայի վերելքին։ 1955 թվականին Սերբիայի արդյու-

նաբերական արտադրանքը գերազանցել նախապատերազմյան մակարդակը 2,2 անգամ։ Առանձնապես արագ տեմպերով է զարգանում ծանր արդյունաբերությունը. էլեկտրաէներգիայի արտադրությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցել ավելի քան երեք անգամ։

Սերբիան Հարավսլավիայի շտեմարանն է. երկրում մշակվող գլխավոր կուլտուրաների՝ եգիպտացորենի և ցորենի ընդհանուր բերքի գրեթե երկու երրորդը տալիս է Սերբիան։

Սերբիայի գլխավոր քաղաքը Բելգրադն է, որը միաժամանակ Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի մայրաքաղաքն է։ Նա պատերազմից հետո խիստ աճել է և այժմ ունի ավելի քան 500 հազար բնակիչ։ Բելգրադն այժմ ոչ միայն Սերբիայի, այլև ամբողջ Հարավսլավիայի արդյունաբերական և կուլտուրական խոշոր կենտրոնն է։ Բելգրադում են գտնվում ՀՖԺՌ-ի պետական իշխանության օրգանները՝ միութենական ժողովրդական սկուպշչինան, Միութենական գործադիր վեչեն, ինչպես նաև պրեզիդենտի նստատեղին։ Ռեսպուբլիկայի խոշորագույն գիտական հիմնարկն է Սերբիայի Գիտությունների ակադեմիան։



## ԽՈՐՎԱԹԻԱ

Իր տերիտորիայով (56,5 հազար քառակուսի կիլոմետր) և բնակչությամբ (4 միլիոն մարդ) այդ ռեսպուբլիկան բռնում է երկրորդ տեղը՝ Սերբիայից հետո։ Նրա հիմնական բնակչությունը խորվաթներն են, որոնք խոսում են նույն լեզվով, ինչ որ սերբերը (այսպես կոչված՝ սերբ-խորվաթերեն լեզու)։

Խորվաթիան գտնվում է Հարավսլավիայի հյուսիսային և արևմտյան մասում՝ Հունգարիայի սահմանագծից մինչև Ադրիատիկ ծովի ափերը։ Երկրի արևելյան մասում գերակշռում են բլրապատ հարթավայրերը, որոնք վարելահողեր են, պտղի և խաղողի այգիներ։ Ռեսպուբլիկայի միջին մասը սակավաբնակ լեռնային շրջաններն են։ Ծովափին գտնվում է պատմական Դալմացիայի գավառը։ Դա Եվրոպայի ամենագեղեցիկ վայրերից մեկն է։ Միջերկրածովային կլիման հնարավորություն է տալիս աճեցնել հարավային արժեքավոր կուլտուրաներ (կիտրոն, նարինջ, ձիթապտուղ)։ Վառ արևը, տաք ծովը, երկրի հուշարձանները՝ ծովափը դարձնում են համդաստի և տուրիզմի աշխարհահռչակ վայր։

Խորվաթիան ունի բավականին զարգացած էկոնոմիկա։ Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր արժեքով նա զիջում է միայն Սերբիային, իսկ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի քանակով ընթանում է առջևից։ Նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացել է 2,3 անգամ։ 1945—1955 թվականների ընթացքում այստեղ կառուցվել է 9 էլեկտրակայան, այդ թվում երկրի ամենախոշոր՝ Վինոդոլի էլեկտրակայանը։ Խորվաթիան ածխի և նավթի արդյունահանությամբ Հարավսլավիայում բռնում է առաջին տեղը։ Ժողովրդական իշխանության տարիներին այստեղ բացվել են նոր խոշոր նավթահանքեր։ Վերականգնված է Սիսակի մետալուրգիական գործարանը, վերստին ստեղծված է ալյումինի արդյունաբերություն, որը վերամշակում է տեղական բոքսիտները (Ռազին և Լոզովաց քաղաքների գործարանները՝ Շիբենիկից ոչ հեռու)։

Մեծ զարգացում են ստացել մեքենաշինությունը, մասնավորապես՝ նավաշինությունը (նավաշինարաններ Ռիեկայի, Պուլայի և Սպլիտի նավահանգիստներում) և



էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը (Զագրեբում և Կարլովացում)։ Խորվաթիայի թեթև արդյունաբերությունը նույնպես բավականաչափ զարգացած է։ Կան տեքստիլ, կաշվի, կոշկի, սննդի և այլ ձեռնարկություններ։

Խորվաթիայի դաշտերում մշակվում են եգիպտացորեն, ցորեն և տեխնիկական կուլտուրաներ։ Հարավսլավիայի խաղողի գինու կեսից ավելին արտադրվում է Խորվաթիայում։ Ադրիատիկ ծովի առափնյա շրջանում, բացի դրանից, զարգացած է ձկնորսությունը։

Հարավսլավիայի խոշորագույն նավահանգիստները, որոնց միջոցով արտաքին աշխույժ առևտուր է կատարվում, գտնվում են Խորվաթիայի տերիտորիայում։

Ժողովրդական իշխանության տարիներին երկու անգամ ավելացավ Խորվաթիայի բուհերում սովորողների թիվը, հասնելով 16,3 հազարի։

Խորվաթիայի արդյունաբերական, վարչական և կուլտուրական կենտրոնն է Զագրեբը իր բնակչությամբ (350 հազար բնակիչ) և նշանակությամբ դա Բելգրադից հետո երկրի երկրորդ քաղաքն է։ Զագրեբում կան բազմաթիվ խոշոր (ավելի քան հազար բան-

վոր ունեցող) ձեռնարկություններ։ Հենց այստեղ էլ գտնվում են Հարավսլավիայի գիտությունների և արվեստների ակադեմիան, համալսարանը և մյուս կուլտուրական հիմնարկները։

## ՍԼՈՎԵՆԻԱ

Այս ռեսպուբլիկան գտնվում է երկրի հյուսիս-արևմտյան մասում, Իտալիայի և Ավստրիայի սահմանների մոտ։ Բնակիչներն են սլովենները։ Սլովենիան լեռնոտ երկիր է։ Լեռնալանջերը և ձորերը ծածկված են անտառներով։ Չնայած իր փոքր տարածությանը (20,2 հազար քառակուսի կիլոմետր) և փոքրաթիվ բնակչությանը (1,5 միլիոն), Սլովենիան տնտեսական զարգացման մակարդակով բավականին առաջ է անցել Հարավսլավիայի մյուս մասերից։

Սլովենիայի ազգային եկամտի մոտ երկու երրորդը տալիս է արդյունաբերությունը (գյուղատնտեսության բաժինը կազմում է 13,6 տոկոս)։ Ժողովրդական իշխանության տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերությունն աճել է գրեթե 2,5 անգամ։ Այստեղ արդյունահանվում է՝ ածուխ, նավթ, արճիճ, ցինկ, սնդիկ։ Հարավսլավիայում ար-



տադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի ավելի քան մեկ երրորդը ընկնում է Սլովենիային։ Դրավա գետի վրա ստեղծված է հիդրոէլեկտրակայանների մի հզոր կասկադ։ Զարգացած է սև մետալուրգիան։ 1954 թվականին Կիդրիչևոյում գործարկվեց երկրի ամենախոշոր ալյումինի կոմբինատը։ Մեքենաշինությունը ներկայացնում են Մարիբորի ավտոմոբիլային գործարանը, Լյուբլյանայի ձուլագործարանը և այլ ձեռնարկություններ։ Զարգացած է փայտամշակման, ինչպես նաև տեքստիլ և կոշիկի արդյունաբերությունը։

Սլովենիան կարտոֆիլի համախառն բերքով երկրում գրավում է երկրորդ տեղը։ Ռեսպուբլիկայում ցանվում են նաև ցորեն, եգիպտացորեն, տարեկան և վարսակ։ Ալպերի տակ, նախալեռնային շրջաններում գցված են պտղի և խաղողի այգիներ։ Սլովենիայում պահվում են կաթնատու անասուններ, նրա տերիտորիայի մեկ հինգերորդ մասը կազմում են արոտավայրերը։

Ռեսպուբլիկայի մայրաքաղաքն է Լյուբլյանան (138 հազար բնակիչ)։ Հենց այստեղ էլ գտնվում են Սլովենիայի գիտությունների և արվեստների ակադեմիան, համալսարանը։

Սլովենիայում ուսանողների թիվը՝ ռեսպուբլիկայի բնակչության թվի համեմատությամբ, հասել է աշխարհի առաջավոր երկրների մակարդակին։ Միայն Սլովենիայի համալսարանում այժմ սովորում է ավելի քան 6 հազար ուսանող, այսինքն՝ երեք անգամ շատ, քան պատերազմից առաջ։

## ՄԱԿԵԴՈՆԻԱ

Այս ռեսպուբլիկան գտնվում է երկրի հարավ-արևելքում։ Նրա տերիտորիան 25,7 հազար քառակուսի կիլոմետր է։ Բնակչության թիվը 1,4 միլիոն է, որի հիմնական մասը կազմում են մակեդոնացիները։

Մակեդոնիան առավելապես լեռնային երկիր է։ Լեռներում հանդիպում են բազմաթիվ օգտակար հանածոներ, որոնցից առանձնապես արժեքավոր են գունավոր մետաղների և առաջին հերթին՝ քրոմի հանքերը։

Մակեդոնիան ավելի երկար ժամանակ, քան Հարավսլավիայի որևէ այլ մասը, մնացել է թյուրքական տիրապետության տակ՝ ընդհուպ մինչև 1912 թվականը։ Այստեղ երկար ժամանակ պահպանվել են ոչ միայն ֆեոդալական, այլև նախաֆեոդալական մնացուկները։ Մակեդոնիան խիստ ետ է մնացել իր զարգացմամբ։



Ժողովրդական իշխանություն հաստատվելուց հետո սկսվեց մակեդոնական ժողովրդի տնտեսության և կուլտուրայի վերելքը, բացվեցին բավականին քանակությամբ դպրոցներ, կառուցվեցին ժամանակակից ձեռնարկություններ։ 1955 թվականին արդյունաբերական արտադրությունը, նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ, ավելացավ 4 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 16 անգամ։ Միայն Մավրովոյում այժմ կառուցվող էլեկտրակայանը կտա 50 անգամ շատ էլեկտրաէներգիա, քան տալիս էին պատերազմից առաջ Մակեդոնիայի բոլոր էլեկտրակայանները՝ միասին վերցրած։ Հաջողությամբ զարգանում է լեռնահանքային արդյունաբերությունը (1954 թվականին քրոմի հանքերի արտադրողականությունը կազմեց ավելի քան 100 հազար տոննա)։

Ըստ էության, Մակեդոնիայում միայն վերջին տարիներս ստեղծվեց տեքստիլ արդյունաբերություն։ Կառուցվել են նաև այլ խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են Յուգոխրոմի քիմիական գործարանը՝ Տետովոյից ոչ հեռու, Տիտոյի անվան մեքենաշինական գործարանը, ինչպես նաև Սկոպլյայի ցեմենտի և ապակու գործարան-

ները։ Հենց այստեղ էլ կառուցվում է խոշոր մետալուրգիական կոմբինատ։

Մակեդոնիայի գյուղատնտեսությունը անցյալում գտնվում էր չափազանց ցածր մակարդակի վրա։ Այժմ գյուղատնտեսության մեջ հետզհետե ավելի մեծ նշանակություն են ստանում տեխնիկական կուլտուրաները (1955 թվականին դրանց ցանքատարածությունը կազմում էր ռեսպուբլիկայի ամբողջ ցանքատարածության 11 տոկոսը)։ Եվրոպական շուկայում առանձնապես մեծ է մակեդոնական ծխախոտի պահանջը։ Դաշտավայրերում ցանվում է՝ բրինձ, բամբակ և հարավային այլ կուլտուրաներ։ Լեռնային ընդարձակ արոտավայրերում զարգանում է ոչխարաբուծությունը։

Մակեդոնիայի գլխավոր քաղաքը, նրա տնտեսական և կուլտուրական կենտրոնը Սկոպլե քաղաքն է (ավելի քան 122 հազար բնակիչ)։ 1946 թվականին այստեղ բացվեց համալսարան՝ հինգ ֆակուլտետով, որտեղ սովորում է 4 հազար ուսանող։

1931 թվականին բնակչության մեջ գրագետների թիվը կազմում էր 32,5 տոկոս, իսկ 1953 թվականին՝ արդեն 64,4 տոկոս։



## ԲՈՍՆԻԱ ԵՎ ՀԵՐՑՈԳՈՎԻՆԱ

Բոսնիայի և Հերցոգովինայի ռեսպուբլիկան գտնվում է Հարավսլավիայի կենտրոնական մասում։ Նրա տերիտորիան 51,1 հազար քառակուսի կիլոմետր է, բնակչության թիվը՝ 3 միլիոն։ Բնակչությունը բաղկացած է սերբերից, խորվաթներից և այլն։

Տերիտորիայի մեծ մասը կազմում են լեռները, որոնք ծածկված են Հարավսլավիայի ամենաընդարձակ անտառներով։ Միայն Սավա գետի երկարությամբ, նեղ շերտով, ընկած է մի հարթավայր, որը պիտանի է հողագործության համար։ Ընդերքը հարուստ է արժեքավոր հանածոներով՝ երկաթահանք, բոքսիտներ, ածուխ։

Նախկինում Բոսնիան և Հերցոգովինան (ինչպես և Մակեդոնիան ու Չերնոգորիան) երկրի ամենահետամնաց շրջաններից մեկն էր։ Ժողովրդական իշխանության օրոք այն արագորեն վերածվում է ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկայի։ 1955 թվականին արդյունաբերական արտադրությունը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը 2,9 անգամ։ Բոսնիան և Հերցոգովինան դարձավ երկրի սև մետալուրգիայի կարևորագույն բազան։ Զենիցայում կառուցվում է և

արդեն մասամբ շարք է մտել մետալուրգիական կոմբինատը, որը տարեկան արտադրելու է 600 հազար տոննա չուգուն և 750 հազար տոննա պողպատ, կառուցվել են մի քանի խոշոր փայտամշակման ձեռնարկություններ։ Ներետվա գետի վրա կառուցվում է ՀՖԺՌ-ում խոշորագույն՝ Յաբլանիցայի հիդրոէլեկտրակայանը, որի առաջին հերթը գործարկվել է։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ գերակշռում է անասնապահությունը։ Գետերի հովիտներում ցանում են ցորեն, եգիպտացորեն, գարի, վարսակ։ Հերցոգովինայում զարգացած է նաև խաղողագործությունը և ծխախոտագործությունը։ Այստեղի ծխախոտը եվրոպական հռչակ ունի։

Առանձնապես մեծ առաջադիմություն է ձեռք բերվել լուսավորության և կուլտուրայի բնագավառում։ Սարայեվոյում հիմնվել է համալսարան, որտեղ սովորում է ավելի քան 4 հազար ուսանող։

Բոսնիայի և Հերցոգովինայի մայրաքաղաքն է պատմականորեն հռչակավոր Սարայեվո քաղաքը (136 հազար բնակիչ)։



## ՉԵՐՆՈԳՈՐԻԱ

Չերնոգորիան իր տարածությամբ և բնակչությամբ Հարավսլավիայի ամենափոքր ռեսպուբլիկան է։ Նրա տերիտորիան 13,8 հազար քառակուսի կիլոմետր է, բնակչության թիվը՝ 446 հազար մարդ։ Չերնոգորիան գտնվում է երկրի լեռնոտ և առավել դժվար մատչելի մասում։ Հարավ-արևմուտքում նա դուրս է գալիս դեպի Ադրիատիկ ծովը։ Չերնոգորցիները հիանալի էջեր են գրել թուրքական զավթիչների դեմ հարավային սլավոնների մղած բազմադարյան պայքարի պատմության մեջ և առաջիններից մեկը հասել անկախության։

Տնտեսական տեսակետից Չերնոգորիան հին Հարավսլավիայի ամենահետամնաց մասերից մեկն էր։ Գյուղատնտեսական հումքի վերամշակման մի քանի փոքրիկ, կիսատնայնագործական ձեռնարկություն և մի քանի պրիմիտիվ սղոցարան՝ ահա այն ամենը, ինչ նա ուներ։ Չերնոգորիան և հարևան Ալբանիան Եվրոպայի այն միակ երկրներն էին, որոնք չունեին ոչ մի երկաթուղի։

Ազատագրությունից հետո չերնոգորցիները ձեռնամուխ եղան իրենց հայրենիքի դա-

*բավոր հետամնացության վերացմանը և հիանալի հաջողությունների հասան այդ գործում։ 1955 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրությունը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը գրեթե վեց անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացավ երեսուն անգամ։*

*Չերնոգորիայի բնակչության երկու երրորդը զբաղվում է գյուղատնտեսությամբ, որի մեջ գերակշռում է արոտային անասնաբուծությունը, պահվում են ոչխարներ և սակավ մթերատու եղջերավոր անասուններ։ Հովիտներում մշակվում են ցիտրուսային կուլտուրաներ։*

*1931 թվականի մարդահամարի տվյալներով, ռեսպուբլիկայում անգրագետների թիվը կազմում էր 55,7 տոկոս։ 1953 թվականին այդ թիվը կրճատվեց՝ հասնելով 30 տոկոսի և շարունակում է արագորեն նվազել։*

*Չերնոգորիայի մայրաքաղաքն է Տիտոգրադը (16 հազարից ավելի բնակիչ)։*

*Չերնոգորիայի տնտեսական և կուլտուրական դարավոր հետամնացությունը հետզհետե անցյալի գիրկն է անցնում։ Այժմ նրա, ինչպես և Հարավսլավիայի մյուս ռեսպուբլիկաների առջև լայն ճանապարհ է բացվել դեպի սոցիալիստական ապագան։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈՒԼԻՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՆՈՐ ԹԱՓՈՎ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ 6-ՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956։*

Բարձրացնել Միութենական ռեսպուբլիկաների դերը ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում, *«Պրավդա»-ի հունիսի 4-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 5-ի համարում։*

Լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնել գյուղի բոլոր աշխատողներին, *«Հայաստանի կոլտնտեսական»* *ամսագրի 1956 թվականի 5-րդ համարի առաջնորդողը։*

### 2. ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԲՈԼՈՐԻՆ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի բանաձևը՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 75—79։*

Գյուղատնտեսության առաջավոր փորձի համաժողովրդական համալսարանը, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 5-ի առաջնորդողը։*

Լայնորեն տարածենք առաջավոր փորձը, *նյութեր Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների աշխատանքի դրական փորձի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 3-ի համարում։*



### 3. 1956 ԹՎԱԿԱՆԸ ԴԱՐՁՆԵՆՔ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՏԱՐԻ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 42—51։*

Գյուղատնտեսական աշխատանքների հուլիս ամսվա օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1956 թվականի 6-րդ համարում։*

Լայն ցուցադրական կոլտնտեսությունը *(նյութեր առաջավոր կոլտնտեսության աշխատանքի փորձից), տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 30-ի համարում։*

### 4. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ՃԱԿՆԴԵՂ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը շաքարի ճակնդեղի և շաքարի արտադրությունը ավելացնելու միջոցառումների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 7-ի համարում։*

90 հազար տոննա շաքարի ճակնդեղի համար, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 9-ի առաջնորդողը։*

Գյուղատնտեսական աշխատանքների հուլիս ամսվա օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 6-րդ համարում։*

## *5. ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՄ ԿԱՏԱՐՎՈՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼԸ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՊԱՐՏՔՆ Է*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ԴԻՄՈՒՄԸ բոլոր կոմերիտական կազմակերպություններին, կոմերիտականներին ու կոմերիտուհիներին, ամբողջ սովետական երիտասարդությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի մայիսի 10-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Եղեք եռանդուն և հաստատակամ մեր Հայրենիքի հարստությունների յուրացման համար մղվող պայքարում, *ճառ Մոսկվա քաղաքի կոմերիտականների ու երիտասարդության ժողովում, տպագրված «Ավանգարդ»-ի 1956 թվականի հունիսի 12-ի համարում ։*

Սովետական Պրիմորյեն, *առանձին հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 26-ի համարում։*

Հայրենիքի կոչով, *«Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 26-ի առաջնորդողը։*

Մեր երիտասարդության նկատմամբ հոգատարության մի նոր, վառ վկայություն, *«Պրավդա»-ի առաջ-*



*նորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 30-ի համարում։*

## *6. ԾԻՇՏ ՈՒ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ԱՄԱՌԱՅԻՆ ՀԱՆԳԻՍՏԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության Միությունների խնդիրները, *Երկեր, Հատոր 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 108—121։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Զեկուցում ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների մասին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 79—87։*

## *7. ՍԻՍՏԵՄԱՏԻԿԱԲԱՐ ԿԱՏԱՐԵԼ ՀՈՒՄՔԻ, ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱՅԻ, ՎԱՌԵԼԻՔԻ ԵՎ ՕԺԱՆԴԱԿ ՆՅՈՒԹԵՐԻ ԽՆԱՅՈՂՈՒԹՅՈՒՆ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956, էջ 76—80։*

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉ— Ճառ ՍՄԿՊ XX համագումարում, *Հայպետհրատ, 1956։*

Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ— Ճառ ՍՄԿՊ XX համագումարում, *Հայպետհրատ, 1956։*

### *8. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԽՆԱՄՔԸ, ԱՎԵԼԱՑՆԵՆՔ ՄՍԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ*

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 42—51։*

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեում, մսի արտադրությունն ավելացնելու և մթերումների հարցերին նվիրված խորհրդակցություն, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի մայիսի 19-ին համարում։*

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Չարկ տալ մսի արտադրությանը, լավ կազմակերպել մթերումները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիսի 8-ի համարում։*

### *9. ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ*

### *10. ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ*

### *11. ՕՐԵՑՕՐ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅԻ ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին,



*Հայպետհրատ, 1956, էջ 6—57։*

Հարավսլավիայի Ֆեդերատիվ ժողովրդական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Իոսիպ Բրոզ Տիտոյի ժամանումը ՍՍՌՄ, *ինֆորմացիոն տեղեկություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունիս ամսվա համարներում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Ի ա. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

